Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՎԵՑԵՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

1956 թվականի փետրվարի 5—12-ը մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, Կրեմլի Մեծ պալատում տեղի ունեցավ Սովետական Միության Գերագույն Սովետի 4-րդ գումարման 6-րդ սեսիան։

Սեսիան քննարկեց տնտեսական, կուլտուրական և պետական շինարարության կարևորագույն խնդիրներ, ինչպես նաև Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության հարցեր։

Քննարկված հարցերի վերաբերյալ ընդունած որոշումները առաջնակարգ նշանակություն ունեն սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման, սովետական ռեսպուբլիկաների ծաղկման, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման համար։

Ահա թե ինչու ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած օրենքները և որոշումները արժա-





նացան սովետական ամբողջ ժողովրդի միահամուռ հավանությանը և ջերմ պաշտպանությանը, առաջ բերեցին քաղաքի և գյուղի միլիոնավոր աշխատավորական մասսաների ստեղծագործ նախաձեռնության և ակտիվության նոր, հզոր վերելք՝ 6-րդ հնգամյակի երկրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանը հաջող կատարելու համար։

Սեսիան ամփոփեց կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում, ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ձեռք բերած նշանակալից հաջողությունները։

1956 թվականը տնտեսական գործունեության բոլոր բնագավառներում սովետական ժողովրդի նշանակալի հաջողությունների տարի էր։ Իրագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները, մեր երկիրը մի նոր առաջընթաց քայլ կատարեց կոմունիզմի կառուցման ճանապարհին։ Սոցիալիստական արդյունաբերությունը գերակատարեց 1956 թվականի պլանը, արտադրության ծավալն ավելացնելով 1955 թվականի համեմատությամբ գրեթե 11 տոկոսով։ 1956 թվականին ՍՍՌՄ-ն արտադրել է 40 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք, քան



1913 թվականին։ 1956 թվականին մեր երկիրն արտադրել է 35,8 միլիոն տոննա չուգուն, 48,6 միլիոն տոննա պողպատ, 38,7 միլիոն տոննա գլանվածք, 429 միլիոն տոննա ածուխ, 83,8 միլիոն տոննա նավթ, 192 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և այլն։

Վերելքի ուղիով է ընթանում սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Խամ ու խոպան հողերի յուրացման համար մղվող համաժողովրդական պայքարը հիանալի արդյունքներ տվեց, յուրացվեցին 35,5 միլիոն հեկտար նոր հողեր։ 1956 թվականին մթերվել է 3,3 միլիարդ փութ հացահատիկ, չհաշված համարժեքները և հացահատիկի փոխարինումը այլ մթերքներով։ Դա հնարավորություն տվեց ոչ միայն ապահովել հացահատիկի ասպարեզում երկրի ընթացիկ պահանջմունքները, այլև լրջորեն համալրել նրա պաշարները։

1956 թվականին մթերված է 481 հազար տոննայով ավելի բամբակ, քան 1955 թվականին, պետությանը հանձնված է 3,8 միլիոն տոննայով ավելի կաթ։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ ձեռնարկված մի շարք միջոցառումների կենսագործման շնորհիվ, բնակ-

չությունն ստանում է ավելի քան 35 միլիարդ ռուբլու լրացուցիչ օգուտ։

Սեսիայում միաժամանակ լուրջ քննադատության ենթարկվեցին արտադրության և շինարարության պլանավորման, ձեռնարկությունների ղեկավարման հարցում մի շարք մինիստրությունների և գերատեսչությունների թույլ տված սխալներն ու թերությունները, միջոցառումներ մշակվեցին դրանց շուտափույթ վերացման, մեր երկրի անսպառ տնտեսական ռեզերվները սովետական ժողովրդի շահերին, կոմունիզմի կառուցման գործին ծառայեցնելու համար։

Գերագույն Սովետի սեսիան միահամուռ կերպով հավանություն տվեց և հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պետական պլանը և 1957 թվականի պետական բյուջեն։ 1957 թվականի ժողովրդատնտեսական պլանը համոզիչ կերպով ցույց է տալիս Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հոգատարությունը ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման մասին։ 1957 թվականի ժողովրդատնտեսական պլանը ելնում է ՍՄԿՊ XX համագումարի կողմից 6-րդ հնգամյակի համար սահմանված գլխավոր



խնդիրներից։ Այդ խնդիրներն են՝ ծանր ինդուստրիայի առավել զարգացման, տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա աճը, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքը և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի զգալի բարձրացմանը։

Ժողովրդատնտեսական պլանին համապատասխան կառուցվում է նաև ընթացիկ տարվա բյուջեն։

ՍՍՌՄ 1957 թվականի Պետական բյուջեն հաստատված է եկամուտների գծով ընդամենը՝ 617.155.967 հազար ռուբլի գումարով և ծախսերի գծով ընդամենը 604.580.653 հազար ռուբլի գումարով՝ ծախսերի նկատմամբ եկամուտների 12.575.314 հազար ռուբլի գումարի գերազանցումով։ 1956 թվականի համեմատությամբ բյուջեի եկամուտները ավելանում են 32 միլիարդ ռուբլով, իսկ ծախսերը՝ 43 միլիարդ ռուբլով։

ՍՍՌՄ Զինված Ուժերի կրճատման ասպարեզում կառավարության ձեռնարկած միջոցառումների կապակցությամբ երկրի պաշտ-

պանության ծախսերը պակասում են, 1956 թվականին հաստատված 102,5 միլիարդ ռուբլու դիմաց (բյուջեի բոլոր ծախսերի 18 տոկոսը) 1957 թվականին նախատեսված է 96,7 միլիարդ ռուբլի (16 տոկոսը)։ Դա վկայում է, որ Սովետական Միությունը հետևողականորեն և հաստատակամորեն վարում է խաղաղության պահպանման և ամրապնդման քաղաքականություն։

Պետական բյուջեն ապահովում է սոցիալիստական էկոնոմիկայի նոր, հզոր վերելքը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը, երկրի պաշտպանության ամրապնդումը։

Սեսիայի որոշումներում իր արտահայտությունը գտավ սոցիալիստական էկոնոմիկայի հիմքը հանդիսացող ծանր ինդուստրիայի առավել զարգացման վերաբերյալ լենինյան գլխավոր գիծը։

Երկրի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի աճը 1957 թվականին անցյալ տարվա համեմատությամբ ավելանում է 7,1 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 7,8 տոկոսով, սպառման միջոցներինը՝ 5,9 տոկոսով։ Նախատեսված է 1957 թվականին արդյունահանել 446,2 միլիոն տոննա ածուխ, նավթի հանույթը հասցնել 97 միլիոն տոն-



նայի, չուգունի ձուլումը՝ 38,1 միլիոն տոննայի, պողպատինը՝ 51,5 միլիոն տոննայի, գլանվածքինը՝ 39,5 միլիոն տոննայի, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 211,2 միլիարդ կիլովատ-ժամի։ 1957 թվականի պլանում նախատեսված է ծանր ինդուստրիայի սիրտը հանդիսացող մեքենաշինության հետագա զարգացում։

Վարելով ծանր արդյունաբերության առաջնահերթ զարգացման կուրս, պարտիան ելնում է նրանից, որ որքան շատ ունենանք մետաղ, ածուխ, նավթ, էլեկտրաէներգիա, մեքենաներ, մի խոսքով այն ամենը, ինչ տալիս է ծանր արդյունաբերությունը, այնքան հաջողությամբ կընդլայնվի ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, կվերելք կապրի գյուղատնտեսությունը, կավելանա բնակարանային շինարարությունը, է՛լ ավելի կբարելավվեն աշխատավորների նյութական և կուլտուր-կենցաղային պայմանները։

1957 թվականը լուրջ հաջողությունների տարի պետք է լինի գյուղատնտեսության աշխատողների համար։ Չնայած գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողություններին, այնուամենայնիվ գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճ-

ման տեմպերը դեռևս չի կարելի բավարար համարել։ Այդ վերաբերում է առանձնապես մսի, ձվի, բրդի, շաքարի ճակնդեղի, յուղատու կուլտուրաների արտադրությանը։ Ժողովրդատնտեսական պլանում հաշվի է առնված, որ 6-րդ հնգամյակի կատարման համար անհրաժեշտ է խիստ կերպով բարձրացնել այդ մթերքների մթերումների աճի տեմպերը։ Պարտիան ու կառավարությունը, ամբողջ սովետական ժողովուրդը անդուլ հոգատարություն են ցուցաբերում գյուղատնտեսության նկատմամբ, նրան բազմակողմանի օգնություն են ցույց տալիս։ Ընթացիկ տարում գյուղատնտեսությունը ստանալու է հազարավոր որակյալ աշխատողներ, 145.000 տրակտոր, մոտ 135.000 հացահատիկային կոմբայն և այլ տեխնիկա։

Մեծ խնդիրներ են նախատեսվում տրանսպորտի և կապի հետագա զարգացման համար, դրանք նորագույն տեխնիկայով հագեցնելու, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունը ընդարձակելու համար։

Գլխավոր ուշադրությունը դարձնելով ծանր արդյունաբերության զարգացման վրա, Սովետական պետությունը միշտ ելնում է աշխատավորների կյանքի բարելավման շահե-



րից։ 1957 թվականի ժողովրդատնտեսական պլանի տարբերիչ գիծը կայանում է նրանում, որ ծանր ինդուստրիայի հաջողությունների բազայի վրա նախատեսվում է ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելի բարձր տեմպեր, քան առաջ։

1957 թվականին լուրջ զարգացում են ստանալու թեթև, տեքստիլ և սննդի արդյունաբերությունը։ Այսպես օրինակ, վուշի գործվածքեղենի արտադրությունն ավելացվելու է 10,2 տոկոսով, բամբակե սպիտակեղենինը՝ 10 տոկոսով, հագուստի գործվածքեղենինը՝ 12 տոկոսով, շաքարի արտադրությունը՝ 9,5 տոկոսով, վերամշակվելու է 19,5 միլիոն տոննա կաթ և այլն։

Ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման աղբյուրը ՍՍՌՄ ազգային եկամտի աճն է։ 1957 թվականին այն ավելանալու է 8 տոկոսով։ Պլանով նախատեսվում է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել արդյունաբերության մեջ 5,4 տոկոսով, շինարարության մեջ՝ 8,5 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության աճի հաշվին 1957 թվականին ստացվելու է արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճի մոտ 80 տոկոսը։ 1957 թվականին զգալիորեն ավելացվելու է բանվորների ու ծա-

ռայողների աշխատավարձի ընդհանուր ֆոնդը և կոլտնտեսականների եկամուտները։ Բնակչության դրամական եկամուտների աճման համապատասխան, պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը անցյալ տարվա համեմատությամբ ավելացվում է 57 միլիարդ ռուբլով։ Ապրանքաշրջանառության նման վիթխարի աճ մեր երկրում չի եղել երբեք։

Մեր երկրի աշխատավորները մեծ գոհունակությամբ ընդունեցին ժողովրդատնտեսական պլանի մեջ, հատկապես բնակարանային շինարարությանը նվիրված բաժինը։ Սովետական մարդկանց բնակարանային պայմանների բարելավումը պարտիան և կառավարությունը դիտում են որպես 1957 թվականի և ամբողջ 6-րդ հնգամյակի կարևորագույն խնդիրը։

Սովետական իշխանության հաստատումից հետո, բնակարանային շինարարության հարցերը միշտ էլ գտնվել են բանվորա-գյուղացիական կառավարության ուշադրության կենտրոնում։

Հինգերորդ հնգամյակի տարիներին կառուցվել ու շահագործման է հանձնվել 151,7 միլիոն, իսկ 1956 թվականին 36 միլիոն քառ. մետր բնակելի տարածություն։ Բնակարա-



նային շինարարության չափերը վիթխարի են և նրանք աճում են տարեցտարի։ Բայց նրանք չեն կարող մեզ բավարարել, քանի որ բնակարանային պրոբլեմը մեր երկրում դեռևս լուծված չէ։ Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը անհրաժեշտ համարեց լրացուցիչ միջոցներ հատկացնել բնակարանային շինարարության համար, լավ օգտագործել տեղական շինանյութերը, անշեղորեն խրախուսել տեղական նախաձեռնությունը։

1957 թվականին պետական կապիտալ ներդրումները բնակարանային շինարարության համար սահմանված է 29,9 միլիարդ ռուբլու չափով։ Դրա հաշվին, ինչպես նաև բնակչության միջոցներով ու պետական վարկի օգնությամբ այս տարի շահագործման է հանձնվելու 46 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 28 տոկոսով ավելի, քան 1956 թվականին։ Բոլոր միջոցները և հնարավորությունները պետք է գործադրվեն մոտակա տարիներին աշխատավորների բնակարանային պայմանների արմատական բարելավման, շինարարությունը թանկացնող ամեն տեսակ ավելորդությունների վերացման, ցածրահարկ շինարարության ծավալման համար, խրախուսվելու է

սեփական ուժերով բնակարաններ կառուցելու ուղղությամբ բանվորների և ծառայողների հիանալի նախաձեռնությունը։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար հատկացվող ծախսերը 1956 թվականի համեմատությամբ ավելացվում են 25 միլիարդ ռուբլով և կազմում են 188 միլիարդ 398 միլիոն ռուբլի։

1957 թվականին հետագա զարգացում է ստանալու ժողովրդական կրթությունը։ Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը այս տարի հաշվվում է 29,1 միլիոն մարդ, տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական դպրոցներում սովորողների թիվը մոտ 2 միլիոն մարդ, բուհերի ուսանողներինը՝ ավելի քան 2 միլիոն մարդ։ Հսկայական միջոցներ են հատկացված գիտության զարգացման, լաբորատորիաները և ինստիտուտները նորագույն սարքավորումով հագեցնելու համար և այլն։ Ընդարձակվելու է հիվանդանոցների, ծննդատների, սանատորիաների, մանկամսուրների, մանկապարտեզների և բժշկական մյուս հիմնարկների ցանցը։





Մեր երկրում տեղի է ունենում ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի անշեղ վերելք, ավելի ու ավելի է աճում ռեսպուբլիկական օրգանների ղեկավար դերը տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը ապահովել և ապահովում է միութենական բոլոր ռեսպուբլիկաների էկոնոմիկայի և կուլտուրայի անշեղ վերելքը։

Հաշվի առնելով ազգային կադրերի աճը, տեղական նախաձեռնությունը զարգացնելու նպատակով, պարտիան ու կառավարությունը վերջին տարիներին մի շարք միջոցառումներ մշակեցին տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման բնագավառում միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման ուղղությամբ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան կարևոր, սկզբունքային նշանակություն ունեցող մի շարք օրենքներ ընդունեց։ Այդ օրենքները ազգային ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման, պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարե-

ըում նրանց դերի բարձրացման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի վարած քաղաքականության մի նոր վառ արտահայտությունն են։ Եթե նախկինում միութենական ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենսդրությունը, քաղաքացիական, քրեական և դատավարական օրենքների ընդունումը մտնում էր ՍՍՌ Միության իրավասության մեջ, ապա այժմ նրանք հանձնվում են միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը։ Նոր օրենքը է՛լ ավելի կբարելավի մեր օրենսդրությունը և այն է՛լ ավելի կմոտեցնի կյանքին, կամրապնդի միութենական ռեսպուբլիկաների սուվերենությունը, թույլ կտա պետության օրենսդրական գործունեության մեջ խորապես հաշվի առնել յուրաքանչյուր ռեսպուբլիկայի ազգային առանձնահատկությունները։

Կարևոր նշանակություն ունի սեսիայի կողմից ՍՍՌՄ Գերագույն դատարանի Կանոնադրության ընդունումը։ Դրա հետևանքով էապես սահմանափակվում են միութենական ռեսպուբլիկաների դատական օրգանների քննարկած գործերով ՍՍՌՄ Գերագույն դատարանի հսկողական ֆունկցիաները։ Հսկողական կարգով գործերի քննությունը, որպես կանոն, ավարտվելու է միութենական



ռեսպուբլիկաների դատական օրգաններում։ Գերագույն դատարանի Կանոնադրության ընդունումը զգալիորեն կընդլայնի ազգային ռեսպուբլիկաների դատական օրգանների դերը և պատասխանատվությունը սոցիալիստական օրինականության և արդարադատության իրականացման գործում, հնարավորություն կտա ՍՍՌՄ Գերագույն դատարանին ավելի շատ զբաղվելու դատարանների գործունեության ընդհանրացման, օրենսդրության և դատավարության հետագա բարելավման և կատարելագործման հարցերով։

ՍՍՌ Միության իրավասության ներքո պահպանվում է դատարանակազմության և դատավարական օրենսդրության հիմունքների, քաղաքացիական և քրեական օրենսդրության հիմունքների սահմանումը։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ սովետական օրենսդրությունը եղել է, կա և կմնա որպես միասնական սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքներն ու գաղափարներն արտահայտող օրենսդրություն։

Հետևողականորեն իրականացնելով ազգային ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնման լենինյան գիծը, ՍՍՌՄ Գերագույն Սովետը միութենական ռեսպուբլիկաների իրավասությանը հանձնեց մարզային,

երկրամասային վարչա-տերիտորիալ կառուցվածքի հարցերի լուծումը։ Այդ բանը հնարավորություն կտա վարչա-տերիտորիալ կառուցվածքի հարցերը լուծելու ժամանակ ավելի լավ հաշվի առնել տեղի էկոնոմիկան, աշխարհագրական պայմանները, բնակչության կազմը և այլ առանձնահատկությունները, որոնք ավելի լավ գիտեն իրենք՝ միութենական ռեսպուբլիկաները։ Նոր օրենքը կնպաստի պետական ապարատի գործունեության հստակ կազմակերպմանը, աշխատավոր մասսաներին պետության կառավարման գործում լայնորեն ներգրավելուն, տեղերում կատարվող տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը։

ՍՄԿՊ XX համագումարում արված առաջարկի հիման վրա սեսիան որոշում ընդունեց Ազգությունների Սովետի Տնտեսական Հանձնաժողով ստեղծելու մասին։ Հանձնաժողովը, որպես բոլոր ռեսպուբլիկաների հեղինակավոր ներկայացուցիչներից կազմված միջռեսպուբլիկական օրգան, պետք է երկրի բազմակողմանի փորձի ուսումնասիրության հիման վրա առաջարկություններ նախապատրաստի միութենական ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական զարգաց-



ման հարցերի վերաբերյալ։ Հանձնաժողովը պետք է մշակի միասնական, բոլոր միութենական ռեսպուբլիկաների համար ընդունելի և նրանց ընդհանուր շահերին համապատասխանող տեսակետ, հաշվի առնելով տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ նրանց առանձնահատկությունների և յուրահատուկ շահերի ամբողջ բազմազանությունը։

Գերագույն Սովետի ընդունած վերոհիշյալ որոշումները մի նոր, առաջընթաց քայլ են Սովետական պետության ամրապնդման, միութենական ռեսպուբլիկաների սուվերեն իրավունքների ընդլայնման, սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացման, մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամության հետագա ամրապնդման գործում։

***

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան քննարկեց Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության հարցերը և միահամուռ կերպով հավանություն տվեց դրանց։

Ընկ. Շեպիլովի զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում նորից և նորից ընդգծվեց Սովետական պետության արտա

քին խաղաղասիրական քաղաքականության, երկու հակադիր հասարակական սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի անսասանելիությունը։

Վերջին տարիներին Սովետական պետությունը մեծ աշխատանք կատարեց միջազգային լարվածությունը մեղմացնելու ուղղությամբ։ Սովետական Միության ակտիվ միջամտությամբ 1953 թվականին դադարեցվեց պատերազմը Կորեայում, 1954 թվականին հանգցվեց պատերազմի օջախը Հնդկաչինում, կարգավորվեց ավստրիական հարցը։ ՍՍՌՄ-ի նախաձեռնությամբ նորմալացվեցին սովետա-հարավսլավական հարաբերությունները, դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև։

Ամրապնդվեց Սովետական Միության բարեկամական համագործակցությունը Հնդկաստանի, ինչպես նաև Ինդոնեզիայի, Եգիպտոսի, Սիրիայի, Աֆղանստանի և ուրիշ այլ երկրների հետ։ Դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին Կամբոջայի, Սուդանի, Ցեյլոնի, Թունիսի, Լիբերիայի Նեպալի հետ։ Սովետական ժողովուրդը ողջունեց ՍՍՌՄ-ի և Յապոնիայի հարաբերությունների նորմալացումը։ Զգալի զարգացում ստացան ՍՍՌՄ և արտասահմանյան



երկրների պետական գործիչների անձնական կոնտակտները, պառլամենտական պատվիրակությունների փոխայցելությունները, ընդլայնվեցին ՍՍՌՄ տնտեսական ու կուլտուրական միջազգային կապերը։ Սովետական կառավարությունը մի շարք կոնկրետ առաջարկներ մտցրեց զինաթափման հարցի շուրջը համաձայնության գալու համար։ ՍՍՌՄ-ը 1.840 հազար մարդով կրճատեց իր զինված ուժերը, նվազեցրեց պաշտպանության ծախսերը, Ֆինլանդիային հանձնեց Պորկկալա-Ուդդ ռազմական բազան։ Իրենց զինված ուժերն ու ռազմական ծախսերը զգալիորեն կրճատեցին Չինաստանը, Լեհաստանը, Չեխոսլովակիան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները։

Բայց Արևմուտքի տերությունները և նրանց կառավարող շրջանները ոչ միայն չպաշտպանեցին Սովետական Միության և մյուս խաղաղասեր պետությունների առաջարկները, այլև փորձեր արեցին բացահայտ հարձակման անցնելու երկու ուղղություններով՝ Արևելքի ազգային-ազատագրական շարժման դեմ և սոցիալիստական երկրների մեծ համագործակցության դեմ։ Իմպերիալիստները տեսնելով, որ սոցիալիստական երկրների հզորությունը, նրանց ժողովուրդների համա-

գործակցությունը անընդհատ աճում և ամրապնդվում է, որ Արևելքում գաղութային սիստեմի պահպանման մասին երազանքները ավելորդ են, գործի դրեցին հակաժողովրդական դավադրությունների ու ռազմական ավանտյուրաների զենքը։ Նրանք հույս ունեին երկու հարվածով՝ Եգիպտոսում և Հունգարիայում համաշխարհային ասպարեզում դրությունը փոխել իրենց օգտին, բայց չարաչար կերպով սխալվեցին իրենց հաշիվներում, կրելով ռազմական, տնտեսական ու բարոյա-քաղաքական խայտառակ պարտություն։

Վերջին իրադարձությունները մեկ անգամ ևս ցույց տվեցին ՍՄԿՊ XX համագումարի այն դրույթների ճշտությունը և կենսունակությունը, որ արդի պայմաններում պատերազմը ճակատագրական անխուսափելիություն չէ, որ պատերազմները կարող են կանխվել ու խափանվել, որ միջազգային ասպարեզում ուժերի այժմյան տեղաբաշխման պայմաններում միակ ռեալիստական քաղաքականությունը սոցիալական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների հետ խաղաղ գոյակցության քաղաքականությունն է։

Այն ժամանակ, երբ սոցիալիզմի լագերի



երկրների ժողովուրդների հարաբերությունները կառուցվում են լիակատար իրավահավասարության, տերիտորիալ ամբողջականության, պետական անկախության ու սուվերենության հարգման, միմյանց ներքին գործերին չմիջամտելու հիման վրա, կապիտալիզմի լագերի երկրների միջև գնալով սրվում են իմպերիալիստական հակասությունները։

Եգիպտոսի դեմ անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիայի ձախողման հետևանքով, ԱՄՆ-ը օրակարգի մեջ դրեց Անգլիային և Ֆրանսիային Մերձավոր ու Միջին Արևելքի գոտուց լիովին դուրս մղելու խնդիրը։ Դրա ծնունդը հանդիսացավ այսպես կոչված «Էյզենհաուերի դոկտրինան», որի համաձայն ԱՄՆ-ը մտադիր է այդ շրջանը պատել ատոմային բազաներով, հեղեղել իր զորքերով և հարմար պահին ագրեսիվ պատերազմ ըսկսել։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները ոչ միայն ուզում են դուրս մղել իրենց մրցակիցներին, նրանց նպատակն է Անգլիային և Ֆրանսիային իրենց «կրտսեր պարտնյորներից» դարձնել «ավագ վասալներ»։

Ավելի ու ավելի են սրվում Արևմտյան Գերմանիայի դերի նկատելի աճման հետ կապված հակասությունները։ ԳՖՌ-ն մի շարք ցուցանիշների գծով անցել է Անգլիայից ու

Ֆրանսիայից և այժմ արդեն հանդես է գալիս որպես Անգլիայի ու Ֆրանսիայի ուժեղ և վտանգավոր մրցակից։

Հեռավոր Արևելքում աճում են Ճապոնիայի ուժերը։ Նա համառորեն աշխատում է Ասիայի երկրներից դուրս մղել իր մրցակիցներին, առաջին հերթին Անգլիային, ինչպես նաև ազատագրվելու ԱՄՆ-ի դիկտատորական վերահսկողությունից և ապահովելու իր անկախությունը։

Այսպիսով, ներկա էտապը բնութագրվում է կապիտալիստական գլխավոր տերությունների միջև հակասությունների սրմամբ, սպառազինությունների կատաղի մրցավազքով։

Անշեղորեն ամրապնդելով բարեկամությունը և եղբայրական համագործակցությունը ժողովրդական Չինաստանի հետ, սոցիալիստական լագերի երկրների հետ, բոլոր խաղաղասեր երկրների հետ, Սովետական Միությունը առաջիկայում ևս իր ջանքերը կգործադրի ընդհանուր զինաթափման համար, փոխադարձ շահավետ տնտեսական կապերի ընդարձակման, գիտական և կուլտուրական համագործակցության համար։

Վարելով հետևողական խաղաղասիրական քաղաքականություն, Սովետական Միությունը սակայն չի կարող հաշվի չառնել, որ ո-



րոշ իմպերիալիստական շրջաններ փաստորեն հրաժարվում են խաղաղ գոյակցության սկզբունքներից և առաջվա նման շարունակում են դիմել միջազգային պրոբլեմների լուծման ուժի մեթոդներին։ Բայց սովետական մարդկանց չի կարելի վախեցնել ոչ «սառը պատերազմի» պսիխոզով, ոչ էլ զենք ճոճելով։

Սովետական մարդիկ աչալուրջ կերպով հետևում են իմպերիալիստների խժդժությունների, բարձրացնում են իրենց զգոնությունը, հոգատարությամբ ամրապնդում իրենց Հայրենիքի պաշտպանական հզորությունը և պատրաստ են արժանի հակահարված տալու ամեն մի ագրեսորի, ով կհանդըգնի խանգարել նրանց ստեղծագործ, խաղաղ կյանքը և աշխատանքը։ Սովետական Միության աշխատավորները միահամուռ կերպով հավանություն են տալիս և պաշտպանում պարտիայի ու կառավարության լենինյան արտաքին քաղաքականությունը, որն ամբողջովին համապատասխանում է ամբողջ աշխարհում խաղաղության կայունացման և ժողովուրդների անվտանգության ապահովման շահերին, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման շահերին։

***

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 6-րդ սեսիայի աշխատանքը ամբողջ աշխարհի առջև մեկ անգամ ևս ցուցադրեց սովետական կարգի իսկական ժողովրդական, իսկական դեմոկրատական բնույթը, որն աշխատանքի միլիոնավոր մարդկանց բարձրացրել է պետության կառավարման աստիճանին։ Կրեմլի Մեծ պալատի ամբիոն էին բարձրանում ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները՝ պարտիական ու սովետական ղեկավար աշխատողներ, բանվորներ, կոլտնտեսականներ, գիտության ու կուլտուրայի աշխատողներ։ Նրանք խոսում էին կյանքի առաջադրած խնդիրների մասին, բացահայտում մինիստրությունների և պետական մյուս օրգանների աշխատանքում եղած թերությունները, մտցնում կոնկրետ առաջարկներ, նշում գործնական ուղիներ՝ ՍՄԿՊ XX համագումարի որոշումների շուտափույթ և անթերի կատարման համար։

Սոցիալիստական կարգը իսկական ժողովրդական կարգ է, ամենադեմոկրատականն է աշխարհում։ Որքան էլ բուրժուական մամուլը և ռադիոն ջանքեր թափեն սոցիալիստական կարգը զրպարտելու համար, նրանց չի



հաջողվի իրենց երկրների աշխատավորներից թաքցնել այն, որ ՍՍՌՄ-ում և սոցիալիզմի լագերի մյուս երկրներում ժողովուրդն է իր կյանքի, բախտի տնօրինողը, իր ստեղծած բոլոր նյութական և կուլտուրական արժեքների տերը։ Գերագույն Սովետի սեսիայի բոլոր որոշումները կոլեկտիվ իմաստնության արդյունք են, հենց իր՝ ժողովրդի որոշումներն են։

Սեսիան ընթացավ բոլոր պատգամավորների նպատակների և խնդիրների միասնության, սովետական դեմոկրատիզմի լիակատար միահամուռության նշանաբանով։

Սեսիայում ելույթ ունեցան նաև հայ ժողովրդի պատվիրակները։ Նրանք խոսեցին մեր ռեսպուբլիկայի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի ոգեշունչ աշխատանքի, ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների մասին, պետական իշխանության բարձրագույն օրգանի առջև դրեցին մի շարք ակտուալ հարցեր, որոնց լուծումը առաջնակարգ նշանակություն կունենա ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա զարգացման համար։

Հայաստանի աշխատավորները, ինչպես

սովետական բոլոր մարդիկ մեծագույն ոգևորությամբ ընդունեցին Գերագույն Սովետի 6-րդ սեսիայի որոշումները։ Նրանք լայնորեն ծավալում են սոցիալիստական մրցությունը մեծ Հոկտեմբերի 40-ամյակը արժանավայել դիմավորելու համար, բազմապատկում են իրենց ուժերը ՍՄԿՊ XX համագումարի որոշումները պատվով կատարելու, էկոնոմիկայի, կուլտուրայի բոլոր բնագավառներում նորանոր հաջողություններ ձեռք բերելու համար։



Այս օրերին, ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները մեծ խանդավառությամբ, աշխատանքային ու քաղաքական ակտիվության վերելքի իրադրության մեջ նախապատրաստվում են աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը առանձնահատուկ նշանակություն են տալիս Սովետների, որպես աշխատավորների մասսայական կազմակերպության, պետական իշխանության ամենադեմոկրատական ձևի աշխատանքին, ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում սո-



վետական օրգանների գործունեության բարելավման, մասսաների հետ Սովետների կապի ամրապնդման մասին։

Եվ, պետք է ասել, որ ՍՄԿՊ XX համագումարից հետո զգալիորեն աշխուժացել է Սովետների աշխատանքը։ Նրանք սկսել են մասսաներին ավելի եռանդուն կերպով և լայնորեն ներգրավել տնտեսական և կուլտուրական շինարարության գործում, նախաձեռնություն հանդես բերել աշխատավորներին հուզող, կենսական հարցերի, նրանց կարիքների բավարարման հետ կապված խնդիրների լուծման ասպարեզում։

Միանգամայն պարզ է, որ այնտեղ, ուր Սովետները լավ են կազմակերպում աշխատանքը, ճիշտ են կատարում իրենց պարտականությունները, այնտեղ անմիջապես ձեռք են բերվում լավ արդյունքներ։

Չնայած դրան, Սովետների գործունեության մեջ դեռևս խոշոր թերություններ կան։ Հաճախ նրանք թույլ են կատարում տնտեսական ու կուլտուրական շինարարության գործում մասսաների կազմակերպչի իրենց ֆունկցիան, քիչ են հոգում աշխատավորների պահանջների ու կարիքների մասին, երբեմն անտարբերությամբ են անցնում բնակարանային շինարարության ասպարեզում սխալ-

ների ու թերությունների կողքով, քիչ են նախաձեռնություն հանդես բերում դպրոցների, հիվանդանոցների, բաղնիքների, ակումբգրադարանների, խանութների, ճաշարանների և մյուս հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքի բարելավման գործում։

Տեղական Սովետների ներկա ընտրությունները պետք է խթան հանդիսանան նման կարգի բոլոր թերությունների իսպառ վերացման, Սովետների գործունեությունը կյանքի առաջադրած խնդիրների մակարդակին բարձրացնելու համար։

Անհրաժեշտ է անշեղորեն ակտիվացնել Սովետները, որպես ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության զարգացման կարևոր ձևի, է՛լ ավելի բարձրացնել նրանց դերը տնտեսական ու կուլտուրական շինարարության, բնակչության ամենօրյա կարիքների ու պահանջների բավարարման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

Տեղական Սովետները և նրանց գործադիր կոմիտեները պետք է ուժեղացնեն իրենց ազդեցությունը և պատասխանատվությունը արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատանքի համար, հասնեն արտադրական



պլանների և առաջադրանքների անթերի կատարմանը յուրաքանչյուր գործարանում, ֆաբրիկայում, կոլտնտեսությունում, սովխոզում, ՄՏ կայանում։ Անհրաժեշտ է հասնել նրան, որպեսզի կանոնավոր հրավիրվեն տեղական Սովետների սեսիաները և բազմակողմանիորեն ու ակտիվ կերպով քննվեն տեղական կյանքի հրատապ, հուզող հարցերը։

Ընտրական կամպանիան թևակոխել է ամենապատասխանատու, լարված շրջանը։ Ընտրողները միահամուռ կերպով դեպուտատության թեկնածուներ են առաջադրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի ծոցից դուրս եկած լավագույն մարդկանց, որոնք ցույց են տվել իրենց խոր նվիրվածությունը Հայրենիքին և կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները ինչպես միշտ, այնպես էլ այժմ կցուցադրեն սովետական դեմոկրատիայի մեծագույն ուժը, մեր հասարակության բարոյա-քաղաքական անխորտակ միասնությունը, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը մեր երկրի աշխատավորների սերտ համախմբվածությունը։

---

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

*ՄԱՐԳՈ ԱՍԱՏՐՅԱՆ*
ՀԿՊ Կենտկոմի վարչական և առևտրա-ֆինանսական օրգանների բաժնի վարիչի տեղակալ

*Մեր երկրի աշխատավորները կանանց միջազգային օրն այս տարի նշում են քաղաքական և աշխատանքային մեծ վերելքի պայմաններում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս ավարտված սեսիայում ընդունվեցին մի շարք կարևորագույն որոշումներ։ Նախատեսված է ծանր ինդուստրիայի հետագա առավել զարգացում և դրա հիման վրա՝ գյուղատնտեսության, ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության նոր վերելք, սովետական ժողովրդի կենսամակարդակի անշեղ աճ։*

*Գերագույն Սովետի սեսիայից անմիջապես հետո կայացած ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում ընդունված որոշման մեջ միջոցառումներ նշվեցին արդյունաբերության և շինարարության ղեկավարման հետագա կատարելագործման ու բարելավման մասին։ Այդ միջոցառումները խոշոր չափով կնպաստեն մեր*



*երկրի ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքին, աշխատավորության լայն մասսաների ստեղծագործական նախաձեռնության ու ակտիվության աճմանը։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի ընդունած որոշումները ելնում են այն մեծ խնդիրներից, որոնք մեր երկրի առջև դրել է ՍՄԿՊ XX համագումարը։*

*Մեծ է սովետական կնոջ դերը մեր երկրի առջև ծառացած վիթխարի խնդիրների կենսագործման ասպարեզում։ Վլադիմիր Իլյիչ Լենինը գտնում էր, որ սովետական իշխանության սկսած գործը կարելի է առաջ մղել այն դեպքում, երբ նրանում մասնակցություն կունենան միլիոնավոր և միլիոնավոր կանայք։*

*Մեր երկրի կանայք սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրից ձեռք բերեցին իսկական երջանկություն, ազատություն և մարդկային արժանապատվություն։ Նրանք տղամարդուն հավասար աշխատում են կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Միլիոնավոր բանվորուհիներ և կոլտնտեսուհիներ մասնակցում են նյութական արժեքների ստեղծմանը, ցուցաբերում են բարձր արտադրողա-*

կանությամբ աշխատելու փայլուն օրինակ։ Բազմաթիվ կանայք աշխատում են գիտության, կուլտուրայի և լուսավորության բնագավառում։

Մեր երկրում կանայք տղամարդկանց հետ համահավասար մասնակցում են պետության ղեկավարման գործին։ Բավական է ասել, որ միութենական և միութենական ռեսպուբլիկաների կառավարությունների կազմում կան 103 կին, որոնցից 4-ը զբաղեցնում են Մինիստրների Սովետների նախագահների տեղակալների, 25-ը մինիստրների և 74-ը մինիստրների տեղակալների պոստեր։

Սովետական երկրում կնոջ հասարակական դիրքը որոշում են աշխատանքը և անձնական ընդունակությունները։ Սովետական կանայք աշխատանքը համարում են իրենց պատվի և փառքի գործը, ցույց են տալիս հերոսության հիասքանչ օրինակներ։

Մեծ են մեր ռեսպուբլիկայի տնտեսական հաջողությունները։ 1956 թվականին համախառն արտադրանքի պլանը կատարվեց 103,7 տոկոսով։ Արտադրանքի թողարկումը 1955 թվականի համեմատությամբ ավելացավ 9,6 տոկոսով։ Մթերվել են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, քան 1955 թվականին, օրինակ, միս 16.682 ցենտներով



ավելի և կաթ՝ 63.985 ցենտներով ավելի։ Ապրանքաշրջանառությունը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել է 9,3 տոկոսով։

Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը սահմանվել է 1910 թվականին կին սոցիալիստների Կոպենհագենի կոնֆերանսում, Կլարա Ցետկինի առաջարկությամբ և նշվում է ամեն տարի։

Սովետական կարգերի հաստատման շնորհիվ միայն իրավազուրկ և հարստահարված հայ կինը կարողացավ ձեռք բերել իր ազատությունը և դարձավ հասարակության լիիրավ անդամը։ Մեր ռեսպուբլիկայում շատ կանայք կառավարության և իշխանության գերագույն օրգանի անդամներ են։ Հայաստանից յոթ առաջավոր կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են, 91 կին՝ ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի դեպուտատներ, 4.189 կին՝ տեղական Սովետների դեպուտատներ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Լենինականի Տեքստիլ կոմբինատի բանվորուհի Աստղիկ Առաքելյանը մեկն է այն միլիոնավոր կանանցից, որը չխնայելով իր ուժերը, անդուլ աշխատում է մեր Հայրենիքի բարօրության համար։ Նա իր լավագույն,

նվիրված աշխատանքի շնորհիվ արժանացել է ժողովրդական ընտրյալի բարձր պատվին։

Իր կյանքից երեսուն տարի է նվիրաբերել ժողովրդական կրթության գործին ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցչուհի Վիկտորիա Դայանը։ Հարյուրավոր շրջանավարտներ են տվել նրա ղեկավարած դպրոցները։ Նրա սաներից շատերը սերտ կապ են պահպանում իրենց սիրելի ուսուցչուհու հետ և միշտ խորհուրդներ են հարցնում նրանից։ Նա նույնպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ է։ Երկար տարիներ է, ինչ Մարիա Բաբաջանյանը աշխատում է որպես Ապակետարայի գործարանի դիրեկտոր։ Նա մեծ ընդունակություններով օժտված կազմակերպիչ է, ռացիոնալիզատոր և նորարար։ Մեր ռեսպուբլիկան հպարտանում է այդպիսի առաջավոր կանանցով։

Իսկ ինչքա՞ն նշանավոր կանայք կան մեզ մոտ, որոնք աշխատում են պարտիական, սովետական, պրոֆմիութենական ղեկավար պոստերում։ Այդպիսիներից են ռեսպուբլիկայի ֆինանսների մինիստր Լարիսա Ստեփանյանը, Կոմունալ տնտեսության մինիստր ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նունիկ Թուխիկյանը և ուրիշներ։

Կինը մեր հասարակարգում մեծ ուժ է,



ամեն տեղ երևում է նրա ակտիվ մասնակցությունը ժողովրդական տնտեսության, այդ թվում նաև առողջապահության, ժողովրդական կրթության, կուլտուրայի ու գիտության բնագավառներում։

Ռեսպուբլիկայի առողջապահության աշխատողների 60 տոկոսից ավելին կանայք են, 68 կին ռեսպուբլիկայի վաստակավոր բժիշկներ են։ Ռեսպուբլիկայի վաստակավոր բժշկուհի, Լենինի շքանշանակիր Եղիզավետա Աֆրիկյանը, 35 տարի է ինչ մեծ հոգատարություն է ցուցաբերում սովետական մարդկանց առողջության մասին։ Բժշկական ֆրոնտի այդպիսի լավագույն աշխատողների թվին է պատկանում նաև Լենինի շքանշանակիր Օսաննա Առաքելյանը։

Ռեսպուբլիկայի ուսուցիչների ավելի քան 50 տոկոսը կանայք են, որոնք ջանասիրաբար մեր մատաղ սերունդը դաստիարակում են կոմունիստական ոգով, նրանցից 277 հոգի արժանացել են ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցչուհու կոչման։ Շատ անվանի կանայք կան նաև կուլտուրայի բնագավառում։ 97 կին ռեսպուբլիկայի վաստակավոր արտիստուհիներ են, 22-ը ժողովրդական, իսկ երեքը ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհիներ։ Բազմաթիվ կանայք պրոֆեսորներ,

դոցենտներ և այլ գիտական աշխատողներ են, որոնք անդուլ կերպով աշխատում են սովետական գիտության զարգացման բնագավառում։

Աշխատանքային արիության վառ օրինակներ են ցուցաբերում մեր գյուղատնտեսության բնագավառում աշխատող կանայք։ 387 կին աշխատում են որպես գյուղատնտեսներ, որոնք ջանք չեն խնայում գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ապահովելու համար։ Շատ կանայք ղեկավարում են կոլտնտեսություններ, ֆերմաներ, բրիգադաներ և օղակներ։ Ո՞ւմ հայտնի չեն Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, օղակավարուհիներ՝ Արծվիկ Հարությունյանի, Արփենիկ Բադալյանի և շատ ուրիշների անունները։

Երկարատև և անբասիր աշխատանքի համար ռեսպուբլիկայում 7978 կին պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 65 կին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ են։

Մեծ է պարտիայի և կառավարության հոգատարությունը սովետական կնոջ նկատմամբ։ Ավելացված է հղիության և ծննդաբերության արձակուրդների տևողությունը, ստեղծված է մանկապարտեզների և մանկա-



մսուրների լայն ցանց, կանանց համար ստեղծված են բոլոր պայմանները հանգիստ և արդյունավետ աշխատանքի համար։ Սովետական կանայք համոզված են, որ իրենց մանուկների խնամքը և դաստիարակությունը գտնվում է պետության հսկողության ու հոգատարության ներքո։

Կանանց համար խոշոր նշանակություն ունի գիշերօթիկ դպրոցների ստեղծումը, նախահանգստյան և նախատոնական օրերին աշխատանքային օրվա տևողության կրճատումը։ Խոշոր գումարներ են ծախսվում բազմազավակ և միայնակ մայրերի նպաստների համար։ Մեր ռեսպուբլիկայում ավելի քան հազար մայրեր, որոնք ծնել ու դաստիարակել են տասը և ավելի երեխաներ, արժանացել են Հերոսուհի-մայր պատվավոր կոչմանը, 2640 կին արժանացել են մայրական փառքի առաջին և երկրորդ աստիճանների շքանշանների և այլն։

Այժմ մեր ամբողջ երկիրը պատրաստվում է տեղական Սովետների ընտրություններին։ Հազարավոր կանայք ակտիվորեն մասնակցում են նախընտրական կամպանիային։ 21.091 կին հանդիսանում են ընտրական հանձնաժողովների անդամներ. բացի դրանից իրենց ագիտացիոն և կազմակերպչական աշ-

խատանքով ընտրությունների նախապատրաստությանը մեծապես օգնում են ուրիշ շատ կանայք։

Միանգամայն այլ է աշխատավոր կանանց դրությունը կապիտալիստական երկրներում։ Նրանք տղամարդկանց հետ հավասար իրավունքներով չեն օգտվում, նրանց հանգիստ չի տալիս վաղվա օրվա մասին տագնապը։ Պատերազմի սպառնալիքը մշտապես կեղեքում է այդ կանանց հոգին, իսկ կենսամթերքների գների բարձրացումը և գործազրկության աճը ավելի մռայլ են դարձնում կապիտալիստական երկրների կանանց համար ապագայի հեռանկարները։

Աշխարհի 80 երկրների ավելի քան 200 միլիոն կին ներկայացուցիչներ պայքարում են Կանանց համաշխարհային ֆեդերացիայի դրոշի ներքո։

Աշխարհի բոլոր կանայք պատերազմ չեն ցանկանում և նրանք իրենց այդ ցանկությունը ավելի հուժկու ձայնով են կրկնում մարտի 8-ին։ Միավորելով իրենց բոլոր ջանքերը, աշխարհի բոլոր առաջադեմ կանայք տղամարդկանց հետ միասին պայքարում են հանուն կայուն խաղաղության, հանուն լավագույն ապագայի։

---



# ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստման այս եռուն օրերին քաղաքական աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխվել է ընտրական տեղամասերը։

Ընտրական տեղամասերում աշխատավորները ծանոթանում են ընտրողների ցուցակների հետ, իրենց հետաքրքրող հարցերով դիմում են ընտրական հանձնաժողովների անդամներին ու ագիտատորներին և հանդիպումներ են ունենում դեպուտատության թեկնածուների հետ։

Պարտիական կազմակերպությունները ագիտացիոն-մասսայական աշխատանքը տեղափոխելով ընտրական տեղամասերը, այն դարձնում են ավելի հետաքրքիր ու նպատակասլաց։

Այս տեսակետից խրախուսելի աշխատանք

է կատարում Երևանի Սպանդարյանի շըրջանի № 67 դպրոցի սկզբնական պարտիական կազմակերպությունը № 23 ընտրական տեղամասում։

Պարտիական կազմակերպությունը համալրել է ագիտկոլեկտիվի կազմը առավել պատրաստված ընկերներով։ Այժմ ագիտկոլեկտիվում ընդգրկված են 30 հոգի։ Ագիտատորները սերտորեն կապված են տեղամասային ընտրական հանձնաժողովի հետ և իրենց ամենօրյա աշխատանքով օգնում են նրան ընտրությունները հաջող նախապատրաստելու ու բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար։

Ագիտատորներից Վաչե Մուրադյանը, Ժենյա Պարտիզպանյանը, Դրաստամատ Սարգսյանը, Ալբերտ Գալստյանը, Ժենյա Աղաբաբյանը և մյուսները սիստեմատիկաբար լինում են ընտրողների մոտ և նրանց համար հետաքրքիր զրույցներ անցկացնում սովետական ընտրական սիստեմի, ՍՍՌՄ և ՀՍՍՌ Կոնստիտուցիաների հիմնական սկզբունքների, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումների, վեցերորդ հնգամյակում նախատեսված հոյակապ խնդիրների կենսագործման ուղղությամբ մեր բանվորների և կոլտնտեսական-



ների կատարած հերոսական աշխատանքի մասին։ Կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով նրանք ցույց են տալիս, թե տեղական Սովետների նախորդ ընտրություններից հետո անցած երկու տարվա ընթացքում մեր երկրի աշխատավորները ինչպիսի նշանակալից հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Ընտրողները,— ասում է Սովետների փողոցի № 29 բնակելի շենքի ագիտատոր Ժ. Աղաբաբյանը,— լուրջ հետաքրքրություն են ցուցաբերում նաև միջազգային դրության նկատմամբ։ Նրանք բազմաթիվ հարցեր են առաջադրում, որոնց բոլորին էլ տրվում են գոհացուցիչ պատասխաններ։

Ագիտատորները ընտրողների շրջանում զրույցներ անցկացնելիս ցուցաբերում են դիֆերենցված մոտեցում։ Նրանք առանձնապես սիստեմատիկ աշխատանք են կատարում տնային տնտեսուհիների և ընտրություններին առաջին անգամ մասնակցող երիտասարդների շրջանում։ Ընտրողների այս խավին ագիտատորները ավելի մանրամասնորեն են պատմում սովետական ամենադեմոկրատական ընտրական սիստե-

մի, դեպուտատության թեկնածուների առաջադրման ու քվեարկության կարգի մասին։

Ընտրական տեղամասի ագիտկոլեկտիվի աշխատանքը ղեկավարում է ընկ. Նշան Պողոսյանը։ Նա պարտիական կազմակերպության օգնությամբ հրավիրում է ագիտատորների սեմինար պարապմունքներ, խորհրդակցություններ, կազմակերպում է հրահանգչական զեկուցումներ։ Սեմինարների ու հրահանգչական խորհրդակցությունների միջոցով ագիտատորներին տրվում է մեթոդական ցուցումներ, հանգամանորեն պարզաբանվում է նրանց անելիքները, ագիտացիոն զրույցների թեմատիկան և այլն։

Պարտիական կազմակերպությունն ու ագիտկոլեկտիվի ղեկավարը ամեն կերպ ձգտում են, որպեսզի ագիտացիոն զրույցները լինեն բովանդակալից ու հետաքրքիր, որպեսզի ագիտացիան սերտորեն շաղկապվի պարտիայի ու կառավարության կողմից սովետական ժողովրդի առջև դրված խնդիրների կատարման հետ, բարձրացնի աշխատավոր մասսաների քաղաքական-արտադրական ակտիվությունը և նրանց մոբիլիզացնի տեղական Սովետների ընտրությունները բարձր խանդավառությամբ անցկացնելու համար։



Ընտրությունների նախապատրաստման այս օրերին առավել լարված աշխատանք է կատարում ընտրական տեղամասի ագիտպունկտը։ Այստեղ ագիտատորներից ու տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամներից սահմանված է ամենօրյա հերթապահություն։ Օրվա ցանկացած ժամին ընտրողներից շատ-շատերը այցելում են ագիտպունկտ և ստանում իրենց հետաքրքրող հարցերի պատասխանը։

Տեղամասային ընտրական հանձնաժողովը և ագիտպունկտը տեղավորված են դպրոցի շենքում, որոնց նորմալ աշխատանքի համար դպրոցի դիրեկցիան ստեղծել է անհրաժեշտ պայմաններ։ Ագիտպունկտում կան օրվա թարմ թերթեր, ամսագրեր, ընտրությունների վերաբերյալ համապատասխան գրականություն, պլակատներ և ցուցադրական ագիտացիայի այլ նյութեր։ Աչքի ընկնող տեղերում պլակատներ են փակցված՝ «Բոլորս դեպի տեղական Սովետների ընտրությունները», «Մարտի 10-ը տեղական Սովետների ընտրությունների օրն է» մակագրությամբ։

Ագիտպունկտում փակցված է նաև ագիտկոլեկտիվի աշխատանքի պլանը։ Ընտրական տեղամասում ընտրողների համար

*կազմակերպվում են հանրամատչելի զեկուցումներ ու դասախոսություններ։ Օրերս ավելի քան 250 ընտրողի համար դպրոցի դահլիճում դասախոսություն կարդացվեց «Երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունը» թեմայով։ Դասախոսությունից հետո ընտրողների համար ցուցադրվեց «Սովետահայ արվեստի և գրականության տասնօրյակը Մոսկվայում», «Դեպքերը Հունգարիայում» և «Խաչատուր Աբովյան» կինոժուռնալները։ Կազմակերպված այս և մյուս միջոցառումները հետաքրքրություն են առաջացնում ընտրողների մեջ և նրանց սերտորեն կապում են ընտրական տեղամասի հետ։*

*Այս ընտրական տեղամասում կան 1657 ընտրող, որոնք ընտրելու են քաղաքային Սովետի 3 և շրջանային Սովետի 6 դեպուտատ։ Ինչպես տեսնում ենք, այս ընտրական տեղամասը բավական մեծ է և ընտրությունների հաջող անցկացումը ինչպես տեղամասային ընտրական հանձնաժողովից, այնպես էլ ագիտկոլեկտիվից պահանջում է ավելի լարված աշխատանք։ Տեղամասային ընտրական հանձնաժողովը, որի նախագահն է դպրոցի դիրեկտոր ընկ. Վ. Հասրաթյանը, արդեն որոշակի աշխատանք*



*է կատարում և հմտորեն օգտագործում է նախորդ ընտրությունների ընթացքում կուտակված փորձը։ Հանձնաժողովին իր ամենօրյա աշխատանքում լուրջ օգնություն է ցույց տալիս ագիտպունկտը։ Այստեղ առաջիկա օրերին կազմակերպվելու են ընտրողների և դեպուտատության թեկնածուների հանդիպումներ, անցկացվելու են զրույցներ, լույս է ընծայվելու պատի թերթի հատուկ համար։*

*Խոսելով № 23 ընտրական տեղամասում կատարվող դրական աշխատանքի մասին, պետք է նշել, որ այստեղ կան նաև որոշ թերություններ։ Դեռևս ընտրողների մի մասի մեջ սիստեմատիկ ագիտացիոն աշխատանք չի կատարվում, որոշ ագիտատորներ սակավադեպ են լինում ընտրողների մոտ։*

*Սկզբնական պարտիական կազմակերպությունը պետք է էլ ավելի ուժեղացնի ագիտացիոն-քաղաքական աշխատանքը ընտրողների շրջանում, հասնի այն բանին, որպեսզի մարտի 10-ին տեղամասի բոլոր ընտրողները մեկ մարդու նման գնան դեպի քվեատուփերը և իրենց ձայնը տան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին։*

---

## ՀԱՐՑ ՈՒ ՊԱՏԱՍԽԱՆԻ ԵՐԵԿՈ

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի օգտակար ձևերից մեկը հարց ու պատասխանի երեկոն է։ ՀԿՊ Իջևանի շրջանային կոմիտեն որոշել է այդպիսի երեկոներ կազմակերպել կոլտնտեսություններում, ՇԸՐՉ-կենտրոնում և Դիլիջան քաղաքում։ Փորձը ցույց է տալիս, որ հարց ու պատասխանի երեկոները շատ բան են տալիս աշխատավորներին։

Նման երեկոների կազմակերպման անհրաժեշտությունը թելադրվում է նաև նրանով, որ հաճախ բազմաթիվ կոլտնտեսականներ և բանվորներ շատ ժամանակ են վատնում, գալիս շրջանային կազմակերպությունները, որպեսզի պարզաբանեն իրենց հետաքրքրող մի որևէ հարց։ Այս տեսակետից ավելի նպատակահարմար է, որ պարտիական-սովետական ակտիվը ինքը գնա կոլտնտեսություն, ձեռնարկություն և այնտեղ հանգամանորեն զրուցի աշխատավորների հետ։

Առաջին հարց ու պատասխանի երեկոն



անցկացվեց Խաշթառակ գյուղում։ Պարտկազմակերպության բյուրոն և ակումբա-գրադարանային աշխատողներն այդ մասին դեռ մի քանի օր առաջ հայտնել էին բոլոր կոլտնտեսականներին։ Այդ երեկո ակումբը լեփ-լեցուն էր կոլտնտեսականներով։ Այնտեղ էին եկել պարտիայի շրջկոմի առաջին քարտուղարը, շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչը, շրջանային դատախազը, շրջսովետի գործկոմի առողջապահության բաժնի վարիչը և ուրիշները։

Հավաքված կոլտնտեսականները տվեցին բազմաթիվ հարցեր և ստացան պարզ, սպառիչ պատասխաններ։

Ահա տրված բազմաթիվ հարցերից մի քանիսը.

— Իջևանի շրջանում ինչպե՞ս է կիրառվում պարտիայի և կառավարության որոշումը՝ կոլտնտեսություններում ամենամսյա վարձատրություն կազմակերպելու մասին։

— Ինչպիսի՞ն են շրջանի գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության հեռանկարները 6-րդ հնգամյակում։

— Ինչո՞ւ Խաշթառակ գյուղում անուշադրության է մատնված երիտասարդության ֆիզիկական դաստիարակության գործը և այլ հարցեր։

Երեկոյի բոլոր մասնակիցներին առանձնապես հուզում էին այն հարցերը, որոնք վերաբերվում էին հարազատ կոլտնտեսության էլ ավելի ամրապնդմանը, արտելի անդամների բարեկեցության հետագա բարձրացմանը։

Պարտիայի շրջանային կոմիտեն որոշել է հաշվի առնել և ուսումնասիրել այդ երեկոներին տրված հարցերը և միջոցներ ձեռք առնել երևան եկած թերությունները վերացնելու համար։

Այսուհետև շրջանային կոմիտեն հաճախակի հավաքելու է շրջանային կազմակերպությունների ղեկավարներին և ստուգելու է, թե նրանք ինչ միջոցառումներ են ձեռնարկել աշխատավորների կողմից բարձրացված այս կամ այն հարցը լուծելու համար։

Ս. ՆԱՋԻՆՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՀՈԳՏԱՆՅԱՆ— «Միցո»: Գինը 3 ռ. 40 կ., 168 էջ, տիրաժ 7.000։

Մ. ԼԵՐՄՈՆՏՈՎ— «Մեր ժամանակի հերոսը»: Գինը 3 ռ. 80 կ., 190 էջ, տիրաժ 10.000։

Գ. ԱՖԻՆՅԱՆ— «Տավարաբուծություն»: Գինը 5 ռ. 30 կ., 300 էջ, տիրաժ 3.000։

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ և Ա. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ— «Հողերի լաբորատոր հետազոտությունները»: Գինը 3 ռ. 65 կ., 210 էջ, տիրաժ 3.000։

Վ. ԵՖՐԵՄՈՎ— «Ավտոմոբիլների նորոգումը»: 1-ին մաս: Գինը 9 ռ. 85 կ., 405 էջ, տիրաժ 3.000։

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 4** **1957 г.**

ՎՖ 01154 Պատվեր 193 Տիրաժ 8360

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.